ԱՅՍ ԱՄՌԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈԼՈՐ ՏԻՊԻ ՃԱՄԲԱՐՆԵՐՈՒՄ ՀԱՆԳՍՏԱՑԵԼ ԵՆ ՇՈՒՐՋ 390.000 ՊԻՈՆԵՐ — ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐ

Լուսանկարները՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

# «ԱՐԾՎԻԿԻ» ՊԱՏԱՆԻ ԱՍՏՂԱԳԵՏՆԵՐԸ



— Ի՞նչ գիտենք արեգակնային համակարգության մասին։

— Ինչո՞վ բացատրել տարվա եղանակների, գիշերվա և ցերեկվա փոփոխությունները։

— Ինչու՞ է երկինքը կապույտ։

Այս և նման հարցերի պատասխանները կիմանաս, եթե քեզ բախտ է վիճակվել մասնակցել Ծաղկաձորի «Արծվիկ» ճամբարի պատանի աստղագետների խմբակի պարապմունքներին։

Գիշերները, երբ ճամբարում բոլորն արդեն քնած են լինում, պատանի աստղագետները ճամբարի պետի և խմբակի ղեկավարի հետ սկսում են իրենց դիտումները և այն էլ՝ ամենաիսկական աստղադիտակով։

Նրանք արդեն տարբերում են առանձին համաստեղություններ, մոլորակներ, աստղեր։ Կարողանում են նկարագրել արեգակնային համակարգությունը։ Գիտեն գալակտիկայի երեք տեսակները, և այն, որ անծայրածիր տիեզերքում անթիվ-անհամար այդպիսի գալակտիկաներ կան։

Արևածագի դիտումը շատերի համար էքսկուրսիա է, հաճելի ժամանց, իսկ նրանց համար ունի նաև գիտական նպատակ։

— Երկնքում երևացող ամեն մի աստղ արեգակ է, և մեր արեգակն էլ սովորական մի աստղ է,—մեր զրույցի ժամանակ ասում են խմբակի անդամները։ — Եվ արևի ջերմությունը մեզ է հասնում միայն այն պատճառով, որ երկիրը շատ մոտ է արևին... Եվ շատ հավանական է, որ մյուս աստղերի, այսինքն՝ արեգակների մոտ էլ մեր երկրի նման մոլորակներ լինեն, որոնց վրա գոյություն ունենա և՛ կյանք, և՛ բանականություն...

Չնայած ցերեկ է և աստղերը չեն երևում, նրանք խոսում են՝ հաճախակի հայացքները երկնքին ուղղելով։

*Մ. ՈՍԿԱՆՅԱՆ*




ՀՈՒՍԵՅՆ ԻԲՐԱՀԻՄՈՎ

(Ադրբեջան)

# ԶԱՐԻՖԱՅԻ ԾԱՂԻԿՆԵՐԸ

(իրապատում)

Սահմանային ուղեկալի պետ կապիտան Կոզլովը հաճախ էր ականատես լինում տարօրինակ մի դեպքի. մի ջահել աղջիկ ծաղիկների փունջը գրկած, այցի էր գալիս սահմանախախտների հետ մենամարտի ժամանակ սպանված լեյտենանտ Պավլենկոյի գերեզմանին և ծաղիկներ դնում նրա շիրիմին: Հետո նա կանգնում էր գերեզմանի մոտ, ինչ-որ բան ասում և հեռանում:

Մի երեկո, կապիտանը լուսամուտի առջև կանգնած նայում էր լեռների հետևում մայր մտնող արևին ու հետըզհետե բլուրների վրա իջնող իրիկնային ստվերներին, երբ կրկին տեսավ, թե ինչպես նույն աղջիկը ահա գալիս է՝ գրկին ծաղկեփունջ:

Աղջիկը մոտեցավ գերեզմանին, ծաղիկները դրեց զինվորի շիրիմին: Հետո կանգնեց շիրմաքարի մոտ, ինչ-որ բան ասաց ու հեռացավ:

Կոզլովը որոշեց մոտենալ աղջկան, ծանոթանալ, իմանալ, թե ով է նա:

Եվ մոտեցավ:

— Աղջիկս,— ժպտալով ասաց կապիտանը,— դու հաճախ ես գալիս ծաղիկներ դնում զոհված սահմանապահի գերեզմանին: Դրա համար խորին շնորհակալություն: Ուզում եմ իմանալ, դու ո՞վ ես, որտեղի՞ց ես ճանաչում լեյտենանտ Պավլենկոյին:

Աղջկա հոնքերը խտացան: Նա տրտում ասաց.

— Ես ձեզ ճանաչում եմ, ընկե՛ր կապիտան, մի քանի անգամ եկել եք մեր դպրոցը՝ հանդիպման: Բայց դուք ինձ չեք ճանաչում: Դնեպրի գետանցի ժամանակ զոհված կապիտան Սահիբ Մուսաևի դուստրն եմ: Անունս Զարիֆա է: Թերթում կարդացել, իմացել եմ, որ Դնեպրի ափին գտնվող Իվանկո գյուղի պիոներները հաճախ են ծաղիկներ տանում դնում այնտեղ թաղված մարտիկների գերեզմաններին: Իմ հայրըն էլ թաղված է այնտեղ, դրա համար էլ Պավլենկոյի գերեզմանը ես իմ հոր գերեզմանի տեղ եմ ընդունում:

Զարիֆան լռեց մի պահ, որ արցունքները կարողանա ետ մղել, և շարունակեց:

— Այս ծաղիկները ես եմ աճեցնում մեր պարտեզում: Մայրս կոլտնտեսությունում օղակավարուհի է: Երբ աշխատանքից վերադառնում է տուն, ես թույլատվություն եմ վերցնում նրանից և գալիս այստեղ:

— Լավ, աղջի՛կս, դա հասկացա, բա գերեզմանի մոտ կանգնում, ինչ-որ բան ես ասում. դա ի՞նչ է, բանաստեղծությու՞ն է...

Զարիֆան գրպանից հանեց մի թերթիկ, տվեց կապիտանին, և նա կարդաց. «Հավերժ փառք մեր հայրենիքի ազատության համար զոհված հերոսներին»: Կապիտանը շոյեց Զարիֆայի մազերը, հետո, շուռ գալով, իր համհարզին կարգադրեց.

— Զարիֆան իմ աղջիկն է: Երբ էլ գա, նրան կնստեցնես իմ ձին, կտանես իրենց տուն:

— Ճիշտ այդպե՛ս, ընկե՛ր կապիտան, — ձգվեց ջահել զինվորը:

*Ադրբեջաներենից թարգմ. Բ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ (Նախիջևանի ԻՍՍՀ Շահբուզի շրջ., Արինջ գյուղի դպրոցի ուսուցիչ):*





ԳՐԻԳՈՐԻ ՎԻԵՐՈՒ

(Մոլդավիա)




## Աստղերի մոտ

Վերից աստղերը ակնդետ
Զրուցում են մարդկության հետ.
— Ձեզ մոտ երկրում նեղվածք է շատ,
Մեզ մոտ այնքա՜ն տեղ կա ազատ:

Մութ երկնքում աստղեր շատ կան,
Բայց մենակ են նրանք այնքան,
Զանձրանում են, երեխանե՛ր,
Գնանք, դառնանք նրանց ընկեր:

Վերից՝ կապույտ քուլաներում
Կտեսնենք մայր գունդը սիրուն
Եվ աստղերի հետ սիգապանծ
Ողջույն կտանք բոլոր մարդկանց:

## Բալենի

— Ցերեկն ապրում ես մի ոտքի վրա,
Մի ոտքի վրա գիշերը քնում,
Երևի շատ է դժվար քեզ համար,
Ճերմակ շորերով բալենի՛ սիրուն:

— Մի՛ մտահոգվիր, իմ փոքրի՛կ տղա,
Ճիշտ է, մի ոտքը քիչ է ինձ համար,
Ես մայր հողի մեջ շատ ոտքեր ունեմ,
Երկար, ջլապինդ, ամուր ու հարմար:

Իմ հավատարիմ բոլոր ոտքերով
Ես վստահաբար հենվել եմ հողին,
Նրանց շնորհիվ, իմ անո՛ւշ տղա,
Կանգնած եմ այսպես հպարտ և ուղիղ:

*Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

# ՀԵՂԵՂ

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

Հովհաննեսը տասը-տասներկու տարեկան էր, սարվորների հետ սար էր գնացել և մեծ կանանց ու հարսնացու աղջիկների հետ եղանավոր էր դարձել: Նրանք հնձվոր չունեին, բայց կով-ոչխար ունեին, և ձմռանը տաք գոմում խոտ էր պետք:

Հովիկ անունով այդ տղան երբ հանդից եկավ, ճաշ կերավ, մայրը քսան կոպեկանոց տվեց կինոյի համար, և տղան բրդունը ձեռքին վազեց դեպի ակումբ: Այդ մաքուր երեկոյի մեջ հարսնացու բոլոր աղջիկները, բոլոր հնձվորները, բոլոր եղանավորները, բոլոր կանայք փոքր ու հին ակումբի տանիքի տակ հավաքված՝ հայացքները հառել էին էկրանին:

Կինոդիտողների լարված լռության վրա շրխկաց մութ ու անսահման անձրևը: Բարձրից դղրդաց ամպը, և դղիրդը, դիպչելով սուրբ Հովհաննես սարին, փշուր-փշուր տարածվեց գիշերվա մեջ:

Հետո հին գոմերի մոտից սարի զառիթափ լանջով գլորվող հեղեղը եկավ, սարի հնձած խոտերից բերեց, քանդված գոմի քարերից, հանդի ծաղիկներից ու ճամփաների փոշուց, հավաքեց ամուր պատերի տակ և ինքը անցավ:

Սարի զառիթափ լանջին խոշոր քարեր չմնացին, հին, խարխուլ տների պատեր չմնացին: Հեղեղն ամեն ինչ խառնեց իրար ու խփեց ակումբի վառվռուն աֆիշի ճակատին: Ակումբի հատակի վրայից կես մետր բարձրությամբ ջուր գնաց, և այդ հսկա ջրարանցման մեջ ոչ ոք դրսի փիթխարի հեղեղին չէր նայում, որովհետև ջուրը բարձրանում ու ավելի սառն էր դառնում, բոլորը փախչում էին իբր թե խեղդվելուց և հանգույց էին կապել դռան մոտ:

***

Տունը միայնակ ու մութ դիմանում էր անձրևին, խոզի բույնը իր անընդմար ծակերով անձրև էր կուլ տալիս: Խոզը էս կողմ, էն կողմ էր անում սառը չոռոցի տակ, ամբողջ կ ո կ ո ր դ ո վ մեկ դժժում էր, ու աքլորը այդ կեսգիշերին գոմից ծուղրուղու էր կանչում: Գոմի դուռը գետնից ցածր էր, ու անձրևը խաղաղ հոսում էր ներս: Կովի ոտքերը մինչև ծնկները ջրի մեջ էին, կովը ուզում էր աղեկտուր բառաչել, բայց ահը նրա մարմինը սեղմել, կաշկանդել էր: Գոմի կողքը, ներքնահարկում, ալյուր կար, պանիր կար, կաղամբի ու սարի շուշանի թթու, կճուճով յուղ կար, հավերի կուտ, ձավար ու բրինձ կար, պարկով շաքար ու մակարոն, և այդ բոլորը տակից դանդաղ թրջըվում էին: Տանը՝ վերևի մութ սենյակում քնած կամ գոմ հոսող ջրի առաջը կտրող մայր կար: Այդ տան, գոմի, մոր, կարտոֆիլի ու արտերի գըլ-

խին տղամարդ չկար։ Հովիկ այդ փոքրիկ տղան էր տղամարդը, որ ակումբի դռան մոտ կծկվել էր ու չըգիտեր էլ, որ կովն արդեն շղթան կտրել է ու վազում է նախրի սար տանող ճամփով։ Չգիտեր, որ մայրը բոբիկ վազում էր դեպի սար ու հազար անգամ մտքում հուսահատ ծեծում իր Հովիկ տղային։ Հեղեղի հետ գլորվող ամեն մի քար նրա երևակայության մեջ մեծանալով հասնում էր տղային և խփում նրան։ Նրա սիրտն այդ պահին բարձրանում էր դեպի երկինք, ու գիշերվա այդ հզոր անձրևը դառնում էր խելագարի ողբ։ Կովը սարսափած փախչում էր, անձրևը թափվում էր նրա վրա, և կովին թըվում էր, թե ջուրը շարունակ բարձրանում է դեպի իր կոկորդը, դեպի տանիքները և դեպի երկինք։

Անձրևն աննկատելի կտրվեց։ Տըղան վազում էր հեղեղի միջով։ Բոբիկ ոտքը ապակի էր խրվել, ու կարմիր արյունը խառնվում էր սև հեղեղին։ Կովը գյուղի վերևում կանգնել էր, մայրը հասել էր նրան ու հիմա թրջված գալիս էին տուն։

Մթան մեջ տղան հասավ մորը և կանգնեց մորից հեռու։

— Վախենում ես, որ կծեծե՞մ,— ասաց մայրը։

Տղան լուռ ու թաց նայում էր։

— Չեմ ծեծի,— ասաց մայրը,—արի։

— Գոմը շա՜տ ջուր է լցվել,— ասաց տղան։

Մայրը մի քայլ արեց, գրկեց տղային ու անլսելի հառաչեց։

Կովը դանդաղ ու հանգիստ գնում էր տուն։



# ՕՐԲԵԼԻ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

Ինչպես հայկական հեքիաթներում է լինում, նրանք երեք եղբայրներ էին՝ ավագը՝ Ռուբենը, միջնեկը՝ Լևոնը, կրտսերը՝ Հովսեփը:

Նրանց մանկությունն անցել է հին Թիֆլիսում: Մեծ պապը՝ Հովսեփ Օրբելին, մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի նման ավարտել էր Դորպատի համալսարանը, իսկ հայրը՝ Աբգար Օրբելին, վերջացնելով Պետերբուրգի (այժմյան Լենինգրադի) համալսարանը, վերադարձել էր Կովկաս և դատավորի պաշտոն էր վարում: Մայրը՝ իշխանուհի Բարբարե Օրբելին, սերում էր Արղության՝ Երկայնաբազուկ, զորավարներով փառաբանված, հայկական հին իշխանական տոհմից:

Երեք զավակների հայրը ոչինչ չըխնայեց որդիներին փայլուն կրթություն և դաստիարակություն տալու համար: Դրան մեծապես նպաստեց բազմազգ Թիֆլիսն իր ուրույն կոլորիտով ու մշակույթի օջախներով, թատրոններով, ուսումնական հաստատություններով, ամսագրերով և թերթերով: Եղբայրները չնայած իրենց արտաքին նմանությանը, ունեին տարբեր նախասիրություններ: Նրանք օժտված էին կենսախինդ, մարդամոտ ու մարդասեր բնավորությամբ: Սիրում և լավ էին հասկանում արվեստն ու երաժշտությունը, ավագը՝ ջութակ, իսկ Լևոնը ֆլեյտա էր նվագում:

Առաջնեկը՝ Ռուբենը, ծնվել է 1880 թվին Նախիջևան քաղաքում, որտեղ հայրը պաշտոնավարում էր: Հետագայում ընտանիքը տեղափոխվում է Քութայիսի, ուր և Ռուբենը ստանում է նախնական կրթություն, ապա Թիֆլիսում վերջացնում դասական գիմնազիայի դասընթացը:

1898 թվին նա ընդունվում է Պետերբուրգի համալսարանը և 1903 թվին ավարտում առաջին կարգի դիպլոմով: Հետագայում Ռուբենը ստանում է մագիստրոսի գիտական աստիճան և գրում մի շարք փիլիսոփայական գիտական աշխատություններ: Ռուբենին շարունակ գրավում էր ծովն իր ստորջրյա գաղտնիքներով և նա շուտով փոխում է իր գործունեության ասպարեզն ու զբաղվում ստորջրյա հնէաբանությամբ: Նա հանդիսացավ այդ նոր գիտական ուղղության պիոներն ու հիմնադիրը:

Պրոֆեսոր Ռուբեն Օրբելին 1937 թվին հիմնադրեց աշխարհում առաջին ջրահնէաբանական թանգարանը:

Նրա մասնակցությամբ ջրային շերտերի խորքից հանվել է 2500 տարվա մակույկ՝ 350-ամյա կաղնու բնից պատրաստված, որն այժմ թանգարանի զարդ է: Նրան ենք պարտական ջրասույզների մասին, հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը, հետաքրքիր տեղեկությունների համար:

1943 թվին Մոսկվայում մահացավ Ռուբենը: Նրա մահը մեծ կորուստ էր գիտության համար:

Միջնեկ եղբայրը՝ Լևոնը, ծնվել է 1882 թվին և իր նախնական ու միջնակարգ կրթությունը ստացել է Ռուբենի հետ:

Հետագայում մասնագիտական կրթություն ստանալու համար մեկնել է Պետերբուրգ, ընդունվել ռազմաբժշկական ակադեմիան և ավարտել 1904 թվին: Սովորելուն զուգընթաց նա կատարել է գիտական աշխատանք աշխարհահռչակ ռուս գիտնականի, Նոբելյան մրցանակի դափնեկիր Իվան Պետրովիչ Պավլովի մոտ: Ավարտելուց հետո Կրոնշտադտի ռազմածովային զինվորական հոսպիտալում վիրաբույժ է եղել, միաժամանակ շարունակել գիտական որոնումները բնախոսության բնագավառում, որոնք նրան բերին համաշխարհային ճանաչում: Այդ աշխատանքները նպաստեցին և հիմք հանդիսացան բժշկության շատ առեղծվածների լուծման: Լևոն Օրբելին երկար տարիներ գլխավորում էր սովետական զինվորական բժիշկների



ՌՈՒԲԵՆ ՕՐԲԵԼԻ

ԼԵՎՈՆ ՕՐԲԵԼԻ





ՀՈՎՍԵՓ ՕՐԲԵԼԻ

դարբնոցի՝ ռազմաբժշկական ակադեմիայի աշխատանքները, որտեղ և դասավանդում էր: Տողերիս հեղինակին նույնպես բախտ է վիճակվել ուն-

կընդրելու նրան։ 1957 թվի ուսումնական տարեսկզբին մենք անհամբեր սպասում էինք բժշկական ծառայության գեներալ-գնդապետ, ակադեմիկոս Լևոն Օրբելու դասախոսությանը։ Նա արդեն 75 տարեկան էր։ Կանգնել էր լսարանում զինվորականին հատուկ ձգված և վայելչատես, սեպաձև ճերմակ մորուքով, խոհուն աչքերով, բարեհամբույր ժպիտը դեմքին։ Մեզնից յուրաքանչյուրն աշխատում էր որքան հնարավոր է նրան մոտ կանգնել։ Դառնալով մեզ՝ բժշկական ծառայության սպաներիս, ասաց.

— Եթե ձեր մեջ կան մոլի ծխողներ, ապա օգտվեցեք ժամանակից, քանի որ դասախոսությունը ընթանալու է առանց ընդմիջման։

Հիրավի, նա 2 ժամ դասախոսեց առանց կոնսպեկտի, մեղմ և համոզիչ։ Պատմում էր բժշկագիտության հաջողությունների, հեռանկարների մասին։ Լսում էինք կլանված։ Նա ամենախրթին հարցերը դարձնում էր զարմանալիորեն պարզ ու մատչելի։ Օրբելու կատարած աշխատանքները պայմանական ռեֆլեքսների և մարսողության բնախոսության ասպարեզում մնում են անգերազանցելի։

Նա կյանքից հեռացավ 1958 թվին, Լենինգրադում։

Եղբայրներից կրտսերը՝ Հովսեփը, ծնվել է 1887 թվին Քութաիսում, միջնակարգ կրթությունն ստացել է Թիֆլիսում, 1904 թվին ավարտել է 3-րդ ւսրական գիմնազիան։ Ավագ եղբայրներին հետևելով մեկնում է Պետերբուրգ՝ բարձրագույն կրթություն ստանալու։

Հովսեփը միաժամանակ ուսանում է համալսարանի երկու բաժանմունքներում և 1911 թվին ավարտում ինչպես պատմական, այնպես էլ արևելյան լեզուների ֆակուլտետը։ Դեռևս ուսանողական տարիներին մասնակցել է մի շարք գիտական արշավախմբերի և գտել լուրջ հետազոտողի ճանաչում։ Առանձնապես ուշագրավ են նրա աշխատանքները Լեռնային Ղարաբաղում, որտեղ ուսումնասիրել է միջնադարյան հայկական արձանագրությունները։ Բազմաբեղուն են Օրբելու կատարած պեղումների արդյունքները միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք Անիում, որից հետո 25-ամյա գիտնականն ընտրվում է ռուսական հնէաբանական ընկերության իսկական անդամ, իսկ 2 տարի հետո սկսում է դասավանդել արևելյան լեզուների բաժանմունքում։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Օրբելին, չնայած պատերազմի արհավիրքներին ու վըտանգներին, պեղումներ էր կատարում պատմական Ուրարտուի տարածքում։ Նրան բախտ է վիճակվում հայտնագործել Սարդուր 2-րդ արքայի 2700 տարվա սեպագիր արձանագրությունը։

Նրա հետագա գործունեությունն այնքան բեղուն ու արդյունավետ է, որ դժվար է անգամ բոլորը թվարկել։

1920 թվին Օրբելին ընտրվում է պետական Էրմիտաժի տնօրեն, որտեղ պահպանվում են համաշխարհային մշակույթի ամենաարժեքավոր նըմուշներ։ Նա ուժ ու եռանդ չի խնայել Էրմիտաժը հարստացնելու, դարձնելու բոլոր ժողովուրդների մշակութային ներդրումների գանձատուն։ Վաղուց ի

վեր Էրմիտաժը աշխարհի արվեստասեր մարդկության համար ուխտատեղի է։

Հայրենական պատերազմի ժամանակ Օրբելին կազմակերպեց Էրմիտաժի պահպանման և էվակուացման դժվարին գործը։

Օրբելին 1943 թվին եկավ Հայաստան և ղեկավարում էր ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական բաժանմունքը։

1943 թվի նոյեմբերի 29-ը դարձավ հայկական գիտությունների ակադեմիայի ծննդյան օրը, իսկ նրա առաջին պրեզիդենտ միաձայն ընտրվեց Հովսեփ Օրբելին։

Լենինգրադի բլոկադայի վերջնական վերացումից հետո Օրբելին վերադարձավ Լենինգրադ և շարունակեց գլխավորել Էրմիտաժի աշխատանքները։

Պատերազմից հետո, երբ Նյուրենբերգում դատում էին ֆաշիստ հանցագործներին, որպես մեղադրող—վկա ելույթ ունեցավ աշխարհահռչակ գիտնականը։ Ներկաներին ցնցեց նրա դրական խորիմաստ ելույթը։

Ակադեմիկոս Հովսեփ Օրբելին կյանքից հեռացավ 1961 թվի փետրվարի 2-ին, անջնջելի հետք թողնելով համաշխարհային մշակույթի ասպարեզում։

Այո, նրանք երեքն էլ տիտան էին, երեք աստղ, որոնք գիտության երկնակամարում կազմեցին Օրբելիների փայլուն համաստեղությունը։

*Վ. ԽԱՉՈՅԱՆ*

# ՄԵՐ ԳՅՈՒՂԻ ԱՌՈՒՆ

*ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ*

Քար ու քարափ է,
Ոտքի տակ՝ առու,
Առուն սարսափ է
Գարնանը բերում։
Բաշը փրփրած՝
Ճչում է, գոռում,
Տիրակալ դառած
Մեր էս նեղ ձորում։
Իսկ ամռան տապին
Նոր խաղ է անում,
Մկան պոչի պես
Բարակ է մանում։
Վա՜յ, քիչ է մնում,
Որ շունչը փչի,
Ստվեր է փնտրում,
Որ հանգիստ շնչի։
Հենց աշունը գա,
Ծրում է նորից,
Հազար գույներ է
Տանում մեր ձորից։
Հապա ձմե՞ռը...
Երբ գունդուկծիկ՝
Քարափի ծերից
Նա ցած է թռչում։
Թռիչքի պահին
Հենց սառցակալում,
Ձմեռ պապիկի
Մորուք է դառնում։
Ինչ կուզեք, ասեք,
Մեր գյուղի առուն
Ամենալավն է
Ամբողջ աշխարհում։

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 52. ԿԱՐԵԼԻ՞ Է «ԽՈՍԵԼ» ԱՌԱՆՑ ԽՈՍՔԻ, ԿԱՄ՝ ԱՐՏԱՀԱՅՏՎԵԼՈՒ ԱՅՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԿՈՉՎՈՒՄ ԵՆ «ԱՐՏԱԼԵԶՎԱԿԱՆ»

Այո՛, կարելի է:

Հարցնում եք մեկին՝ «Պիտի գնա՞նք, թե չէ»: Սա թոթվում է ուսերը, որ թարգմանվում է այսպես՝ «եսիմ»: Սենյակում քնած երեխա կա. մեկը, բանից անտեղյակ, ներս է մտնում աղմուկով: Դուք ցուցամատը դնում եք ձեր շուրթերին, աղաչական հայացքով ցույց եք տալիս երեխային, ուրիշ ոչինչ: Դա նշանակում է՝ «Սո՛ւս, երեխան քնած է»: Ուսուցիչն անում է անսպասելի հայտարարություն, դասարանում աղմուկ է բարձրանում: Ուսուցիչը բարձրացնում է ձեռքը՝ ափով դեպի առաջ, և աշակերտները հասկանում են ուսուցչի «ասածը»՝ պետք է լռել:

Մենք գիտենք, որ խոսքը լինում է բանավոր և գրավոր, առաջինն ընկալում ենք ականջով՝ լսողությամբ, երկրորդը՝ աչքով՝ տեսողությամբ: Կան արտահայտվելու միջոցներ էլ, որ ընկալում ենք տեսողությամբ, բայց դրանք ոչ գրվում են, ոչ հնչում: Դուք արդեն կռահեցիք, որ խոսքը վերաբերում է դիմախաղին, դեմքի, աչքերի արտահայտությանը, մարմնի կեցվածքին, ժեստին, շարժումներին: Դրանք համարվում են հնչող խոսքի տեսողական ուղեկիցները, որոնք ուժեղացնում են նրա հուզական ներգործությունը: Բայց, ինչպես կարող ենք դատել վերը բերված օրինակներով, նույնիսկ առանց խոսքի էլ դրանք ի վիճակի են հաղորդելու մեր վերաբերմունքը, կամքը, ցանկությունները: Եվ հաճախ ավելի ազդեցիկ, քան խոսքը:

Մենք «խոսում» ենք նաև դիմախաղով՝ միմիկայով, գլխի ժխտական կամ հաստատական շարժումներով, մեր աչքերի, ամբողջ դեմքի արտահայտությամբ: Դուք մի բան եք պատմում ձեր ընկերոջը և նրա դեմքից արդեն կարող եք կռահել՝ դա նրան վշտացնո՞ւմ է, թե ուրախացնում, զարմացնո՞ւմ է, թե հիասթափեցնում:

Ժեստի ու դիմախաղի լեզուն միջազգային է՝ աշխարհի բոլոր ծագերում զարմանքը, հիացմունքը, սարսափը և այլն մարդկանց դեմքին միատեսակ են արտահայտ-

վում, նույնը և ձեռքի կամ գլխի շարժմամբ մերժում կամ համաձայնություն հայտնելը։ Բայց կան և բացառություններ. մենք այո «ասում» ենք գլխի ուղղահայաց շարժմամբ, ոչ՝ հորիզոնական տարուբերումով։ Բուլղարների մեջ ընդունված է ճիշտ հակառակը։ Մեզ պաշարած խորին վշտի մասին մենք խոսում ենք վշտահար դեմքով։ Ճապոնացիներն իրենց վիշտը հայտնում են ժպիտով, քանի որ անպատշաճ են համարում իրենց վըշտով համակել մեկ ուրիշին։

Այն էլ կա, որ տարբեր ժողովուրդներ ժեստի, շարժման, դիմախաղի օգնությանը տարբեր չափով են դիմում։ Նկատված է, որ հարավային ժողովուրդները շատ շռայլ են ժեստի և դիմախաղի գործածության մեջ, հյուսիսայինն ժողովուրդները զուսպ են անհամեմատ։ Անգլիացուն և իտալացուն կարելի է տարբերել ժեստի օգտագործման չափից։

Չափավոր թե շռայլորեն՝ դա այլ խնդիր է։ Բայց բոլոր ժողովուրդների խոսքի մեջ էլ ժեստն ու դիմախաղը գրավում են շատ կարեվոր տեղ, ամենուրեք ծառայելով խոսքի հուզական ազդեցությունն ուժեղացնելու նույն նպատակին։ Ահա ինչու հռետորական, ապա և դերասանական արվեստի մասնագետները դարեր ի վեր ամենայն խնամքով մշակել են այդ արտալեզվական արտահայտչական միջոցների կիրառման տասնյակ կանոններ։ Ահա հռոմեացի հռետոր Կվինտիլիանուսն ինչ է գրել ժեստի մասին. «Ձեռքերը, կարելի է ասել, իրենք են խոսում։ Մի՞թե նրանցով չէ, որ խնդրում ենք, խոստանում ենք, կանչում ենք, ուղարկում ենք, սպառնում ենք, աղաչում ենք, զըզվանք ու սոսկում արտահայտում, հարցուփորձ անում, ժխտում։ Մի՞թե ձեռքերով չենք արտահայտում հրճվանք ու վիշտ, տարակուսանք, զղջում, չափ, քանակ, թիվ ու ժամանակ։ Մի՞թե ձեռքերը նաև չեն խրախուսում, չեն զսպում, չեն ըմբոստանում, չեն պաշտում»։

Անտիկ աշխարհում ստեղծվել էր հերոնիմիա կոչվող մի գիտություն, որի առարկան ժեստն էր ու շարժումը։ Կվինտիլիանուսը տարբերակում էր ձեռքի քսաներկու շարժում՝ իրենց յուրահատուկ իմաստավորմամբ։ Ֆրանսիացի փիլիսոփա Մոնտենը հաշվել և դասակարգել էր ձեռքերի քառասունյոթ, գլխի՝ քսան արտահայտություն։

Շեքսպիրի «Համլետում» կա մի տեսարան, ուր արքայազնը խորհուրդներ է տալիս պալատ եկած դերասաններին։ Համլետի խրատները մինչև օրս էլ պահում են իրենց կարևորությունը։ Ահա դրանցից մեկը, որ վերաբերում է շարժմանը. «Շարժումներդ բառերին համմապեցրու և բառերը՝ շարժումներին, հատկապես ուշադիր լինելով, որ բնական չափավորությունից դուրս չելնես, որովհետև ամեն բան, որ չափազանցված է՝ խաղի նպատակին հակառակ է...»

Ուրեմն, բոլոր ժեստերն ու շար-

ժումները չե՞ն, որ ընդունելի են ու գովելի: Իհարկե՛: Քի՞չ կան մարդիկ, որ իրենց խոսքն ուղեկցում են կոպիտ ու տգեղ շարժումներով՝ «Ի՞նչ ես ոտով-ձեռով խոսում»: Կամ իրենց զգացմունքներն արտահայտում են չափազանց ընդգծված դիմախաղով՝ «Ի՞նչ ես աչքերդ չռել»: Գոռոզ, ինքնահավան դիրք են ընդունում՝ «Մի դրա կանգնելուն տես»:

Շարժումներ կան, որ մեխանիկական բնույթ ունեն, դրանք ավելորդ են, ինչպես պաշտոն չունեցող, պարապ բառերը. չե՞ք նկատել՝ խոսելիս քորում են գլուխը, աչքերը ճպճպացնում, տեղ են որոնում ձեռքերը թաքցնելու համար: Սրանք ավելորդ, ծիծաղելի շարժումներ են:

Մեր հոգեբանությունը, ներաշխարհի ամեն մի շարժումն անտես թելերով, բայց շատ ամուր կապված են մեր ձայնի, մեր խոսքի հնչերանգի, մեր կեցվածքի, աչքերի, ամբողջ դեմքի արտահայտության հետ: Մինչև անգամ այն դեպքում, երբ թաքցնում ենք: Լինում է այնպես, որ ուզում ենք քողարկել մեր վիշտը, «խոսքներս փոխում» ենք, ուրախ դեմք ենք շինում, բայց նրբանկատ մարդը կռահում է՝ «աչքերդ ուրիշ բան են ասում»:

Որքան խելացի, որքան կրթված է մարդ՝ այնքան «խելացի», այսինքն՝ իմաստավորված, այնքան ավելի զուսպ, կիրթ են նրա շարժումներն ու դիմախաղը:



Նկ. ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆԻ

# Անմահական խնձորներ

ՌԱՖԱՅԵԼ ՂԱԶԱՆՉՅԱՆ

Տիրոջ ասելով այգին եդեմական էր, նաև կախարդական, և այնտեղ անմահական խնձորներ էին աճում։ Կարելի էր կարծել, թե այդպես է որ կա։ Ծառերի բները օձագալար էին, կեղևը՝ հեքիաթներում լսած վիշապների մաշկի գույնի, հաստ ու խոշոր թեփուկներով։ Միմյանց շատ մոտ էին աճել, համարյա գիրկընդխառն, մեկի ճյուղերը մյուսի ճյուղերի արանքով երկարում և վիշապի պես ոլորվում էին։ Այգին առնված էր որձաքարի պարսպի մեջ, իսկ խնձորենիները պատսպարված էին չոր փշաթփերով։ Թվում էր, այդ տարօրինակ ծառերը տանջանքի դատապարտված մեղավորներ են և միմյանց փարված սգում են մի անսփոփ վիշտ։ Եվ թըվում էր նաև, թե այդ ծառերը ցանկապատի մեջ են առնվել իբրև աշխարհից հեռացող բրածո, հազվագյուտ տեսակներ և այս հողագնդի վրա ոչ մի հարազատ չունեն։ Խիտ, լայն տերևների տակից կախվում էին խոշոր ու ողորկ խնձորները, որոնց գլխափոսիկների մեջ դեղնափուշ ծաղիկներ կային։

Մութ գիշեր էր։ Աստղերն այնտեղ՝ հեռու երկնակամարում միմյանց ճամփա էին տալիս, լուսինը նավարկում էր ամպերից վեր, իսկ ցածում՝ կտրին գցված անկողինների ճերմակ սավանների եզրերը քամուց ծածանվում էին։ Գիշերվա խաղաղ լռության մեջ խոտն անգամ լեզու էր առնում. սըվսըվում էին արևածաղկի ցողունները, լղարիկ առվակն ասես հսկա քարեր էր գլորում։ Մերթընդմերթ լուսնահաչ շների ալարկոտ ողբն էր երկինք

հասնում, ամպերի տակից հանկարծակի հայտնված լուսնի կիսատ կարասից դեղին մեղր էր ծորում։

Վերմակը քթիցս ցած բերի ու սիրտ արեցի նայել կողքի կտուրներին։ Ապա և անմիջապես փակեցի աչքերս ու գլուխս նորից քաշեցի վերմակի տակ։ Ինձ թվաց, թե կտուրների վրայով ցատկոտում է երկար գիշերաշապիկով մի լուսնոտ ևահա ուր որ է ոտքը իմ անկողնու վրա կդնի։

Ճշալ չկարողացա։ Աչքերս փակեցի ու երբ բացեցի, ուղիղ իմ առաջ տեսա Ռուբենի երկարուկ, լուսնի լույսի տակ փոքր ինչ սփրթնած կերպարանքը... Ձեռքս թափահարեցի՝ լուսնոտին քշելու համար, բայց նա օդում որսաց ձեռքս ու ծալեց։

Վեր թռա ու նստեցի անկողնում։

— Սատանա՞ ես, ի՞նչ էս, չքվի՛ր,— ոտքս բարձրացրի, որ խփեմ փորին։ Իսկապես որ կպավ և, ո՜վ զարմանք, նրա լիքը ծոցից սալորները շաղ եկան կտուրին ու աղմուկով գլորվեցին ջրհորդանի մեջ։

— Ի՞նչ սատանա, ա՛յ գիժ, խոստումս եմ կատարում։

— Ի՞նչ խոստում,— ես դեռ լրիվ չէի զարթնել։

— Ո՞նց թե ինչ, բա երեկ չորոշեցի՞նք կեսգիշերին հանդիպել... ճիշտ այս ժամին... Երբ աստղերը դեռ լրիվ մարած չեն լինի...

Նոր միայն հիշեցի, որ իրիկունը պայմանավորվել էինք գաղտագողի մտնել «եղեմական այգին»։

Այգու տերը՝ մորաքույր Թամարը, որին չգիտես ինչու վեճի ժամանակ «թեժ Թամար» էին ասում, համոզում էր մեզ՝ հեռու մնալ իր այգուց։ Ասում էր՝ չլինեմ-չիմանամ իմ ցանկապատից ներս եք թռել, չլինեմ-չիմանամ բարձրացել եք իմ ծառերին, չլինեմ-չիմանամ թեկուզ մի հատ խնձոր եք պոկել... Մեր հարցական հայացքներին նա պատասխանում էր խորհրդավոր՝ «անմահական են... չէ, կախարդական են»։

Եթե անմահական են, ուրեմն, շատ համով պետք է լինեն, եթե արգելված են, ուրեմն շատ-շատերը կփորձեն քաղել, մտածելով, թե գուցե բուժիչ խնձորներ են, գուցե թունավո՞ր, գուցե... իրոք կախարդակա՞ն։ Գուցե, երբ գիշերները մորաքույր Թամարը պոկում է խնձորները (բա էլ ե՞րբ), նրա գոգնոցի մեջ դառնում են խոշոր ակնագողեր, բայց գուցե ոչ ոք չի մոտենում ծառերին, չի հավաքում բերքը, քանի որ էլեկտրական հոսանք է անցնում ճյուղերով։

Ինչե՞ր ասես չէր հորինում մեր երևակայությունը։ Համենայնդեպս, ոչ մի համարձակ տղա, գիշերով լիներ թե ցերեկով, ձեռք չէր տվել նրա «անմահական խնձորներին»։ Ո՞վ սիրտ կաներ մեզանից բացի։

Առվակի ոլորուն եզրով, մեկս մյուսի հետևից ճամփա ընկանք։ Մերթ ես էի առաջնորդում, մերթ Ռուբենը։ Եղնջաթփերը ծակծկում էին մեր ոտքերը, երբեմն սայթաքում էինք ու ջուրն ընկնում, կախվում ուռենու դալար ճյուղերից։ Ոչ մի ձայն-ծպտուն չկար, ծղրիդներն անգամ քնել էին։ Մեր գլխավերևը անշարժացել էր կիսալուսինը, ասես աչք էր պահում մեզ վրա։

Մենք փակ աչքերով էլ կարող էինք գտնել խնձորենիները։ Ես ու Ռուբենը ծնվել էինք այս մեծ բակում։ Ասում էին, թե իրար շատ ենք նման, չէինք կարող նման չլինել, նույն խանձված քիթ-մռութը, նույն սպիները ծնկների ու արմունկների վրա։

Մեծ զգուշավորություն էր պահանջվում, բայց Ռուբենը զգուշությունը մոռանալով շուտ-շուտ բոթում էր ինձ, թե տես՝ այս ծառը ծառ չի, գայլի է նման, թուփը թուփ չէ, պպզած արջ է, իսկ առվակի ջրերից ջրահարսներն են ծիկրակում...

Շատ սրտոտ տղա է Ռուբենը: Նրա հետ դու էլ ես սրտոտ դառնում:

— Դու կպպզես, ես ոտքս ուսիդ կդնեմ, կթռչեմ ցանկապատից ներս,— շշուկով հրահանգում է Ռուբենը:

— Բա ե՞ս...

— Ուզում ես, դո՛ւ թռիր ցանկապատից ներս, ես մնամ...

— Չէ, միասին:

Ահա և ցանկապատը: Մենք քիչ բան էինք տեսնում, ավելի շատ հնարում, պատկերացնում էինք:

— Կանգնի՛ր,— կտրուկ քաշեցի թևից,— դուռը բաց է...

— Չէ՛ մի, հեքիաթնե՛ր,— հեգնեց Ռուբենը՝ բերանս փակելով: Բայց իրոք մենք գտնվում էինք ցանկապատի ներսում:

— Տե՛ս, տե՛ս,— ոչ առանց վախի շշնջացի Ռուբենի ականջին,— վիշապները փաթաթվել են խնձորենիներին:

— Քնած են...

Ձեռք ձեռքի տված պտտվեցինք ծառերի շուրջը:

Ռուբենը հանկարծ կանգ առավ.

— Սանդո՛ւղքը բեր:

Ես նոր նկատեցի ցանկապատին թեք ընկած սանդուղքը:

Ուղիղ դիրքով դրեցի սանդուղքը:

Առաջ Ռուբենը ոտքը դրեց, հետո՝ ես:

Այն է, ուզում էր ձեռք մեկնել ու տերևների տակ թաքնված խնձորը պոկել, երբ...

Չէ, ազնիվ խոսք, հեքիաթ չեմ պատմում: Հարցրեք Ռուբենին, ինքն էլ նույնը կասի... Ասես էլեկտրալարից հոսանք անցավ մեր մարմնով, ու հենց այդ պահին լույս արձակեցին խնձորները՝ տոնածառի խաղալիքների պես: Նույնպիսի լույս երկրորդ հարկում էլ վառվեց: Լսվեց մորաքույր Թամարի ձայնը՝ «ո՞վ է»: Այդ ձայնի վրա մենք թրմփացինք գետնին, իսկ տոնածառի խաղալիքները զնգզնգացին ուժգին, բոժոժների ղողանջով: Փախչելիս աշխատում էինք ետ չնայել, բայց ըզգում էինք, թե ինչպես են վիշապների պոչերը դեմ առնում մեր քայլերին ու ինչքան էլ ճարպիկ լինեինք, միևնույն է, վայր էինք ընկնում: Գուցե հենց այդ պահին լուսնահաչ տվեց գամփռը, բայց մեզ թվում էր, որ արվարձանի բոլոր շները են ընկել հետևներիցս: Իսկ «թեժ Թամարը» գոռգոռում էր՝ «Ո՛չ ոք չմոտենա խնձորներին, ո՛չ ոք չմոտենա...»

Հևասպառ փախանք ու բարձրացանք կտուրը: Ես մտա իմ անկողինը ու վերմակը գլխիս քաշեցի: Իսկ Ռուբենը, լուսնոտի պես ասես չմուշկ էր ոտքին, քիվերի վրայով սահելով գնաց դեպի իր անկողինը:

Այդ գիշեր ես ու Ռուբենը, իհարկե, չէինք կասկածում, որ այգին կախարդական էր, և խնձորները անմահական էին, որ անմահական խնձորներին հսկում են վիշապները, և որ արգելված պտուղին ձեռք տալու համար մենք պատժվելու ենք... Ի՞նչ իմանայինք, որ խեղճ մորաքույր Թամարը ուխտել էր՝ ոչ ոքի մոտիկ չթողնել իր այգու խընձորենիներին, ինքն էլ պետք է ձեռք չտար, մինչև ամուսինը պատերազմից չվերադառնար:

Հարյուր քսանհինգ տարի առաջ՝ 1857 թ. մարտին, Գյումրի քաղաքում ծնվեց Գրիգոր Տալյանը, որ հետագայում հայտնի դարձավ աշուղ Շերամ անունով: Տպագրում ենք անվանի աշուղի որդու, ճանաչված մանկագիր Վազգեն Տալյանի՝ իրենց տոհմի մասին պատմող ակնարկը:

# ՏԱԼՅԱՆ ՏՈՀՄԸ

*(Շերամի ծննդյան 125-ամյակի առթիվ)*

Ինչպես կարողացավ այդ «տղամարդ» կինը տուն դնել, զավակներին իր թևի տակ առած, շահել-պահել, մեծացնել: Կարսից Գյումրի գաղթած հարազատներն էին նրան օգնում, նաև աշուղ Քյամիլիին ճանաչող ու սիրող տեղացի սրտացավները: Տալիթան դարձավ գերդաստանի մեծ մայրիկը՝ տիրուհին: Եվ շուտով Գյումրի քաղաքում բարձր անուն վաստակեց Տալիթայի կամ ինչպես գյումրեցիներն անվանեցին՝ Տալոյի տունը: Ու երբ խոսք էր լինում տոհմի նոր տան մասին, ասում էին՝ Տալոյենց տունը: Տալոյենց տոհմը: Եվ այդ փառավոր կնոջ՝ Տալիթայի անունով սկիզբ առավ Տալյան ազգանունը:

Տարիներն անցան կարիքի դեմ պայքարի մեջ: Տալիթայի Հովհաննես ու Կարապետ որդիները հասակ առան ու գործատուն հիմնեցին: Հովհաննեսը ժառանգել էր հոր՝ Քյամիլիի բանաստեղծելու շնորհքը, իսկ Կարապետը՝ երգելու: Նրանք սրճարան բաց արեցին, որը հետագայում հռչակվեց որպես Տալոյենց Ղայֆա, կամ Ղայֆխանա: Սոսկ սրճարան չէր. երգի ու բանաստեղծության, տաղերի, հեքիաթների, առակների և զրույցների տուն դարձավ տաքուկ ու հարմարավետ այդ փոքրիկ ճաշատությունը: Աշխարհի բոլոր կողմերից, աշխարհի մոտ ու հեռավոր տարածքներից աշուղներ և ասացողներ էին գալիս այդտեղ, աշուղների և ժողովրդական

բառուբանին հմուտ վարպետների մըր-ցություններ էին տեղի ունենում: Եվ օրավուր սկսեցին նոր անուններ փայ-լատակել Շիրակի երկնակամարում: Եվ Տալոյենց սրճարանը, ժամանակի արվեստի և մշակույթի այդ նշանավոր տունը, տասնամյակներ ի վեր պահ-պանում էր Տալիթա մամիկի՝ Տալոյի պանծալի անունը: Տալոյանց Կարա-պետն ամուսնացավ Խաթունի հետ և ունեցան չորս որդի և մի դուստր՝ Բաղդասար, Գրիգոր, Համբարձում, Հարություն և Փեփրոն: Հովհաննեսի և Կարապետի զավակները կրճատեցին ազգանունը և գրվում էին Տալյանց: Իսկ նրանց թոռները սկսեցին գրվել պարզապես Տալյան:

Հովհաննեսը եղբորից շուտ վախ-ճանվեց: Եվ սրա ավագ որդին շարու-նակեց հոր շառավիղը. դա Մկրտիչ Տալյանցն էր, որ հետո աշուղ դարձավ ու հռչակվեց որպես աշուղ Ջամալի, որ նշանակում է գեղեցկություն: Սա նշանավոր Շարա Տալյանի հայրն էր:

Ու մի օր էլ Ախալքալաքից Գյումրի եկավ Սերոբ Լևոնյանը, որ արդեն ե-րիտասարդ աշուղ էր և Շիրակում հայտնի դարձավ աշուղ Ջիվանի ա-նունով: Նա իր առաջին մկրտությունն ստացավ Տալոյենց սրճարանում: Երգի և բանաստեղծության այդ տունն էր, որ հաղթանակի դափնի շնորհեց նը-րան աշուղների մրցման ժամանակ: Նա սիրահարվեց աշուղ Ջամալու քը-րոջը՝ Աշխենին և ամուսնացավ նրա հետ: Եվ աշուղ Ջիվանին դարձավ ա-շուղների նշանավոր Տալյան տոհմի փեսան:

*
**

Երեկոն տարածվել էր ձյունապատ քաղաքի վրա: Լռել էին ցերեկային ձայները, նսքացել անցուղարձը փո-ղոցներում: Բայց չէր լռում երգն ու տաղը Տալոյենց Կարապետի սրճարա-նում: Հեռու-հեռավոր վայրերից աշուղ-ներ էին իջևանել այդտեղ: Ու երգի համար իրենց կրակը գցող գյումրեցի-ները խիտ-խիտ լցվել էին սրճարան, որ զմայլվեն նրանցով:

Ցածրիկ վաճառասեղանի մի անկ-յունում նստած էր Կարապետի միջնեկ որդին՝ փոքրիկ Գրիգորը: Աչքերը պըլ-շած ունկնդրում էր աշուղներին, երա-զում նրանց նման նվագել, նրանց պես գոհար տողեր շարել ու նրանց պես երգել:

Մեռել էր աշուղ Քյամիլիի և Տալի-թայի կրտսեր որդին՝ Կարապետը, և Խաթունը, ճարը կտրած, Գրիգորին հա-նել էր դպրոցից, տվել հյուսնի աշա-կերտ:

... Ահա, արհեստավոր է նա՝ հյուսն. բայց տաղերը հանգիստ չեն տալիս նրան գիշեր ու ցերեկ: Այդ ի՞նչ երգեր են միտը գալիս, հոր սրճարանում լը-սածնե՞րն են միթե... Իսկ սա՞, այս երգը նա ոչ մի տեղ կարծես չի լսել, ոչ մեկից չի լսել... Տե՞ր աստված, ո՞վ է հուշում իրեն այս երգերը. երկնքում թևածող աղավնիների ղունղունն՞ ցը, բարդիների սոսափյու՞նը, Ախուրյանի կարկա՞չը...

Ու պատանին բարձր ձայնով երգում է.

Արի, սիրուն, մոտ արի,
Դու չքնաղ ես ու բարի.
Մեկ օր ինձ կյանք նվիրե,
Իմ կյանքից քեզ՝ շատ տարի...

Գրիգորն աշխատում է: Մուրճով



մեխ է խփում, հղկում պահարանի կողը թե դուրով փորում տախտակը, երգըն անբաժան է նրանից։ Ձեղիկ արհեստանոցը արձագանքում է նրա ըսկըզբում մեղմ, ապա ուժգնացող ձայնին։

Կարճ տևեց պատանի Գրիգորի աշխատանքը ուրիշի արհեստանոցում։ Շուտով նա մտքին դրեց իր արհեստանոցն ունենալ։ Մայրն ու ավագ եղբայրն օգնեցին և... ահա Գրիգորն իր անձնուկ, բայց և սեփական արհեստանոցում է, իր դյուքանում, ինչպես այն ժամանակ ասում էին Ալեքսանդրապոլում։ Եվ աշխատում է նա այդտեղ առավոտից իրիկուն։ Այնքան բարդ իրեր չեն նրա պատրաստածը՝ տաշտ, սնդուկ, պարզունակ պահարան. բայց ապրուստ են հայթայթում, որով օգնում է նա մորը, ընտանիքին... Մի օր էլ նրա խելքին փչեց իր համար իր ձեռքով սազ պատրաստել։

Իրիկնամուտ էր արդեն, երբ մայրը եկավ հասավ արհեստանոց։

— Գրիգո՛ր ջան, ինչի՞ ուշացար, — հարցրեց նա։

— Հիմա կուգամ, մա՛ ջան... դու գընա՛, քիչմ ետև՝ կուգամ...

Մայրը գնաց, նա շարունակեց աշխատել։

Իրիկունը իր շինած սազը փեշի տակ դրած՝ տարավ տուն, բոլորից թաքուն լարեր գցեց ու սկսեց կամացուկ տնկտնկացնել։

Վերջապես... Ինքը նվագում է, ինքը՝ երիտասարդ հյուսնը, որի հոգին, դեռ պատանեկան տարիքից, ողողում էին տաղերը...

Անցնում է որոշ ժամանակ, նա սազից ձանձրանում է.

— Է՛հ, սազն էլ բան չէ... ճնկճընկոց է... հըբը ի՞նչ էնեմ...

Որոշում է իր ձեռքով թառ պատրաստել իր համար։ Եվ անցնում է գործի։

Գիշեր է։ Տնեցիներից միայն Գրիգորն է արթուն։ Պառկել է մութ սենյակում, իր ձեռքով շինած առաջին թառն առել կրծքին ու կարծես զրույց է անում նվագարանի հետ։ Քնքշորեն շոյում է թառի գուշը, մատները սահեցնում կոթով ու մի պահ բռան մեջ պահում չարխած ականջները։ Լարերը մեղմիկ արձագանքում են նրա շոյանքին...

«Է՛, Գրիգո՛ր, թառ ունեցար,— խոսեց ինքն իրեն,— չալե՞լ ով պիտի սորվեցնե քեզ, ո՞վ...» Ախ քաշեց ու հետո, թե՝ «հե՛չ, մի՛ վախենա, ա՛յ տղա... դու կեղնիս քո վարպետը...» Նրան թվաց, թե մեկը վիճում է իր հետ, իսկ ինքը պնդում է. «Դու բան չես հասկնա. կսորվիմ՝ կտեսնիս...»։

Կամացուկ տնկտնկացնում է ու հետըն էլ մեղմ երգում.

Լուսնյակը ելավ, լուսնյակը ելավ,
Երկինքն ամպոտ է, ամպոտ է...

Մայրը քնած չէ. անհանգիստ շուռումուռ է գալիս անկողնում, ախուօֆ անում ու մտածում. «Վայթե նշանվել կուզե տղես...»։ Գրիգորը մի վայրկյան կտրում է ձայնը, նվագարանը պառկեցնում կողքին ու ձևացնում թե քնել է։

Սենյակում մութ է։ Կտուրի թեք, փոքրիկ պատուհանից սեղանին է ընկել լուսնի շողքը։ Լույսի այդ շի թը սեղանից դանդաղ սահում է ը կնում Գրիգորի դեմքին։ Նա շուռ է գալիս, պառկում երեսնիվեր, նայում նվագա-

րանին, ապա լուսամուտին: Ծրթունք-ները շարժվում են, և նա հիշում է...

... Յերեկ էր: Գետակի ափին շորո-րում էին բարդիները: Ծովողում էին թռչունները: Ծառերի տակով անցնում էր մի աղջիկ: Նայում է նա երիտա-սարդին, ծուռ ժպտում ու հեռանում: Գրիգորն ասես կատակախաղ է ա-նում թառի լարերի հետ ու հազիվ լը-սելի մռմռացնում.

Եկավ անուշ գարունը,
Հանդ է գնում սիրունը...

— Ա՜յ տղա,— շշնջում է մայրը, — հերիք եղավ: Էս է լույսը կբացվի...

Գրիգորը թառն զգուշությամբ դնում է սեղանին, վերմակը քաշում գլխին ու շարունակում դնդնալ.

Ցողում է մեղմիկ անձրև,
Վարդը բացեց իր տերև...

Մյուս օրը մայրն իր կարծիքը հայտ-նեց ավագ որդուն՝ Բաղդասարին, թե՝ վայթե ախպերդ պսակվել կուզե: Եվ Գրիգորին ամուսնացրին: Նրա կինը դարձավ Բայաղտար գյուղի տանու-տեր Հարությունի դուստրը՝ Սաղվինա-զը: Սրան գյուղից վաղուց բերել էին Գյումրի և պահել մեծացրել քեռու ըն-տանիքում, որովհետև աղջիկը ինը ամսական էր, երբ մայրը մահացավ:

Գրիգորին արդեն լավ նվագող էին համարում, ճիշտ է, բայց ընտանիքի հացը վաստակում էր տաշտ ու սնդուկ պատրաստելով:

Անակնկալ մի դիպված փոխեց նրա կյանքի ընթացքը. Գրիգորը նստած արհեստանոցում, ոտքի ծայրը վերու-վար էր անում ու նվագում, հայացքը ուղղում էր հեռուներին, ուր աղոտ կերպով երևում էին Արագածի ձյու-նապատ գագաթները...

Մեկ էլ հանկարծ նա երգն ընդհա-տում է, նվագարանը դնում դազգա-հին ու մեկեն ոտքի կանգնում: Մեկը մոտեցել էր դռանը, մեծ ու պեհեր գլխով, թավ հոնքերն ու բեղերը ճիպ-ճերմակ: Գրիգորը դուռը հապճեպ բաց է անում նրա առաջ: Եկողը զարմա-ցած է.

— Սուր աչք ունիս, Գրիգո՛ր, ի՞նչխ տեսար ինձի:

Գրիգորը ժպտում է: Աթոռից փչում է թեփն ու հրում պեհերի կողմը:

— Տեսա, էլի, ուստա՛ Հագո... նըս-տի՛:

— Ըսես-չսես, պիտի նստիմ. գործ ունիմ հետդ:

Այդ ծերունին Հակոբ Մանուկյանն էր՝ Ձոնգուր Հագոն:

— Մեն-մենակ չալելով ի՞նչ պիտի վաստկիս... կուզեմ ըսել, որ գաս ընձի ընկեր էղնիս... Թառ չալողս թո-ղեց հեռացավ, թառ չալող չունիմ:

Գրիգորը մտածմունքի մեջ ընկավ:

— Էլ ի՞նչ կմտածես, օղո՛ւլ. լավ թառ կչալես, հայտնի երգիչ ես արդեն, համ էլ կնիկ - երեխի տեր ես դառել... Էս արհեստով ի՞նչ պիտի տուն պա-հես, մորդ օգնական էղնիս...

—Լավ, ուստա՛ Հագո, դու ընձնեն լավ գիտես, ի՞նչ ըսեմ:

—Ապրիս,— զվարթացավ Հագոն, գրկեց երիտասարդին, թփթփացրեց մեջքը: —Հըբը հերդ որ սաղ էղնիր, ինչքա՞ն պիտի ուրախանար...ողորմի հոգուն...

Պատվաբեր հրավերն ընդունված էր:

⁂

Աշուն է. ասես ոսկի փոշի է շաղ տված ամենուրեք: Բարդիները խա-ղացնում են իրենց դեղնափայլ ծըղն-ղաները, հացիները գետին են իջեց-նում մեղմօրոր տեւևները: Ձինարի-ները լայնաբաց ձևռնափերի նմա-

վող տերևները ասես տարակուսան-քով ճոճում են աջ ու ձախ:

Գրիգորը դեռևս զգացող նվագա-րանը դրեց դազգահի վրա, ծխամոր-ճը հանեց, մտախոհ լցրեց ու նայե-լով անորոշ ուղղությամբ՝ ծխեց: Մե-կըն անվստահ մոտեցավ.

—Գրիգո՛ր ջան... եգուց մեկելօրը ախպորս հարսնիքն է...

Երգիչը թափ է տալիս ծխամորճի մոխիրն ու շեղակի նայում նրան.

—Ծո, ի՞նչ կըսես...

—Հա՛, հը՛բը...Հիմի չե՞ս կրնա եր-գըմ հանել նորապսակների վրա...—

Հարցն անակնկալ էր: Գրիգորը մի պահ մտքի մեջ ընկավ.

—Գիտես, թե հե՞շտ բան է...

—Քեզ համար հեշտ է, էդքան երգ ես հնարել...

—Աշեմ՝ տեսնիմ...

Տունը գիշերային անդորրի մեջ, նորից թրթռացին թառի լարերը: Լամպի աղոտ լույսի տակ Գրիգորը շարեց երգի տողերը.

Պարտիզում վարդեր բացված՝
Կապասեն սոխակի...

Դրան հետևեցին նորանոր տաղեր, շաբաթը՝ մեկ, շաբաթը՝ երկու: Եվ այնքան բեղմնավոր էր աշուղ Քյա-միլիի թոռան քնարը, որ խմբավար Եփրեմ Գյադուկյանը շատ անգամ կատակով ոճգոհում էր.

—Ծո, էս ի՞նչ կենես, ա՛յ օղուլ. իրար ետևից վեր կկարես...

—Ի՞նչ էնեմ, Եփրե՛մ ջան,—ծիծա-ղելով ասում էր Գրիգորը.—ժողո-վուրդը երգ կպահանջե, չտա՞մ:

Իր նվագախումբն առած՝ նա, որ իր մետաքս երգերի համար աշուղ Շերամ անունով էր արդեն հայտնի, շրջագայեց երկրե երկիր, գովերգեց հերոսություն, սեր ու բարիք, հոգե-պարար մեղեդիներով ամոքեց հանա-պազօրյա հաց վաստակող աշխատա-վորի ցավերը: Ման եկավ հազարումի տեղ և սուր աչքով տեսավ, թե որքան թշվառություն կա ամենուրեք, որքան անարդարություն ու տառապանք:

Եվ բողոքի երգեր գրեց երիտա-սարդ Գրիգորը. ըմբոստացավ օտար ու յուրային կեղեքիչների դեմ, փառա-բանեց Զեյթունի քաջերին, ազատա-գրական պայքարի հերոսներին...

Առաջին գրքույկի պատճառած ու-րախությունն աննկարագրելի էր: Երկ-րով մեկ թնդում էր զորավար Անդ-րանիկի անունը: Գրիգորն էլ փառա-բանեց նրա քաջությունը: Ժողովա-ծուի մեջ զետեղված էր նաև «Նվեր Սասնա հերոս քաջամարտիկ Անդ-րանիկին» երգը.

Իբրև արծիվ սավառնում ես լեռ
ու ժայռ...

«Գանգատի շանթերը»... Այսպես էր այդ գրքույկի անունը, որի մեջ բացի զորավարին նվիրված և այլ մարտա-կան տաղերից, հրապարակված էր նաև «Փութանք առաջ» երգը, որ երգ-վում էր հայտնի «Վարշավյանկայի» եղանակով:

Գրքույկը լույս տեսավ 1905 թվա-կանին, և ոչ հեղինակի անունը կար կազմի վրա, ոչ էլ մարդիկ գիտեին, թե որ քաղաքում ու որ տպարանում է տպվել:

Հռչակավոր երգչի ընկերներն ու բարեկամները ջանում էին հեռու պա-հել նրան ոստիկանության հետապըն-դումից:

Այդ գրքույկին կոչի բնույթ էին տա-լիս նաև «Քարեր, դուք խոսեք», «Զեյթունցիների քայլերգը». իսկ սա ավարտվում է այսպես.

Լավ է ազատ մահ,
Քան ստրուկ ապրել աշխարհի վրա...

# ՇՏԱՊ ՆՈՐՈԳՈՒՄ

Ա. ՍԱՎՉՈՒԿ

Մեր տուն եկավ հարևան քեռի Վասյան և դիմեց ինձ այնպիսի հարցանքով, ինչպիսի հարգանքով դիմում է չափահասը չափահասին։

— Հարևա՛ն,— ասաց,— մի մեծ խնդրանք ունեմ։ Լսել եմ, որ հեռուստացույցից լավ ես գլուխ հանում։ Մեր հեռուստացույցը խափանվել է, իսկ մի ժամ հետո ֆուտբոլն է սկսվում։ Նայի՛ր, գուցե կարողանաս սարքել։

— Ինչու չէ,— ասացի,— կարելի է նայել։

Գնացինք իրենց տուն, պարզվեց, որ նրանցը հին «Ռեկորդ» հեռուստացույցներից է։ Ճիշտ այնպիսին, ինչպիսին ունի մեր դպրոցի ռադիոխմբակը։

Բացեցի հեռուստացույցը, սկսեցի նայել։ Քեռի Վասյան կողքիս կանգնած դիտում էր։

— Մի՛ անհանգստացեք,— ասացի, — ռադիոխմբակում ես հարյուր անգամ քանդել-հավաքել եմ այսպիսի հեռուստացույց։

Գտա ինչն էր փչացել, սարքեցի։

— Նորոգեցի, կարող եք միացնել։

Քեռի Վասյան միացրեց, բայց ոչ մի ձայն։

— Ինչի՞ չի աշխատում,— քեռի Վասյան սկսեց նյարդայնանալ,—առաջ գոնե ձայնը կար, հիմա ձայնն էլ կորավ։

Ես էլ ինձ կորցրի։ Ապահովիչները նայեցի, ձգեցի լարը։ Ամեն ինչ կարծես սարքին էր, բայց հեռուստացույցը չէր աշխատում ու չէր աշխատում։

Ուզեցի նորից քանդել, քեռի Վասյան բարկացավ.

— Պետք չի, ավելի լավ է ես ատելիեից վարպետ կանչեմ։

Տրամադրությունս ընկած գնացի դեպի դուռը, մեկ էլ խոհանոցից լսվեց քեռի Վասյայի կնոջ ձայնը.

— Վասի՛լի, արդուկն ինչու՞ չի տաքանում, նայիր տես խցանը հո չի՞ վառվել։

Քեռի Վասյան շտապեց դեպի էլեկտրահաշվիչը, խցանը փոխեց և հեռուստացույցն սկսեց գոռգոռալ։

— Աշխատեց,— քեռի Վասյան էլ կյանք առավ։

— Է՜,— ասացի,— ձեր արդուկն էլ կարգին չի, նրանից է խցանը վառվել։

Վերցրի և արդուկն էլ նորոգեցի։

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ






# Նկարում են ձեր ուսուցիչները

ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության «Պրոֆեսոր Ա. Աբրահամյանի հավաքածու»-ի ցուցասրահում բացվեց ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված մանկավարժ-նկարիչների ցուցահանդեսը, որտեղ դերերը փոխվել էին՝ իրենց ուսուցիչներին քննում էին աշակերտները. խստապահանջներին՝ խըստորեն, ներողամիտներին՝ ներողամըտորեն, անծանոթներին՝ անաչառ կերպով: Ու թեև գնահատականները մատյանում չէին գրանցվում, ուսուցիչները աշակերտների չափ հուզվում էին:



«ԱՇՈՒՆ» Կամո Մկրտչյան,
Աբովյանի շրջ., Գեղաշենի միջն. դպրոցի ուսուցիչ



«ՁԿՆՈՐՍԱԿԱՆ ՆԱՎԱԿՆԵՐ»
Հրաչիկ Եղոյան,
Մարտունու № 2 միջն. դպրոցի ուսուցիչ

ՅՈՒՐԻ ԿՈՎԱԼ

# ՔԵՌԻ ՋՈՒՅՆ ՈՒ ԱՐՋԸ

Յալմա գետի ոլորապտույտներից մեկի մոտ, հին տնակում, որը մի ժամանակ բաղնիք էր եղել, եթե հետաքրքրքրում է ձեզ՝ իմացեք, ապրում է քեռի Ջույը: Ապրում է իր թոռնիկ Նյուրկայի հետ և ինչ որ պետք է, ունի, թե՛ հավ, թե՛ կով:

— Միայն խոզ չունենք,— ասում է քեռի Ջույը,— իսկ լավ մարդու ինչի՞ն է պետք խոզը:

Դեռ ամռանը քեռի Ջույն անտառում խոտ էր հնձել ու հավաքել, բլուր արել, բայց ոչ սովորական, այլ շատ խորամանկ ձևով: Նա խոտի բլուր էր արել ոչ թե գետնին, այլ սահնակի վրա, որ ձմռանը ավելի հեշտ տուն տանի:

Բայց ձմռանը քեռի Ջույն այդ խոտը մոռացավ:

— Պա՛պ, ա՜յ պապ, — ասաց Նյուրկան, — ինչու՞ խոտն անտառից տուն չես բերում, թե՞ մոռացել ես:

— Ի՞նչ խոտ, — զարմացավ քեռի Ջույը, հետո ձեռքը ճակատին խփեց ու վազեց գնաց կոլխոզի նախագահի մոտ՝ ձի խնդրելու:

Նախագահը մի լավ ձի տվեց, այդ ձիով քեռի Ջույն իսկույն տեղ հասավ: Հասավ ու ի՞նչ տեսավ. ձյունը եկել ամբողջովին ծածկել է խոտը: Քեռի Ջույը սկսեց ձյունը ոտքով դես-դեն ցրել ու երբ մեկ էլ ետ նայեց, ձին չկար, անպիտանն ինքն իր համար թողել գնացել էր: Քեռի Ջույը վազեց հասավ ձիուն: Քաշում էր, քաշում, ձին չէր գալիս:

— Էս ինչի՞ց է ձին խրտնում,— մրտմնջաց քեռի Ջույը,— ինչու՞ չի լսում:

Նա մի կերպ սահնակը ձիուն կապեց:

— Դե՜-է՜-է՜...

Ծպպացնում է քեռի Ջույը շրթունքները, գոռում է, իսկ ձին տեղից չի շարժվում: Սահնակը ամուր կպել էր գետնին: Քեռի Ջույը փոքրիկ կացնով խփեց սառցակալած ձողերին, սահնակը շարժվեց, սահնակի հետ էլ բլրակը:

Կեսօրին գյուղ հասան: Քեռի Ջույը սկսեց ձին արձակել:

— Դու այդ ի՞նչ ես բերել, ա՜յ Ջույ, — իր դռնից ձայն տվեց Պանտելեևնան:

— Խոտ եմ բերել, Պանտելե՛ևնա, ի՞նչ պիտի բերեի:

— Բա այդ ո՞վ է դեզիդ վրա:

Նայեց քեռի Ջույն ու քար կտրեց: Մի սարսափելի, մի ծուռումուռ բրդոտ մռութ է դուրս ցցվել խոտի միջից: Արջ էր:

Արջը շուռումուռ եկավ, ծռեց խոտը մի կողքի, ու դուրս ելավ վազեց դեպի անտառը:

— Կանգնի՜ր, — գոռաց քեռի Ջույը:

— Բռնի՜ր դրան, Պանտելե՛ևնա:

Արջը մռնչոցով անհետացավ, գնացկորավ եղևնիների մեջ:

Ժողովուրդը հավաքվեց, եկան գյուղի որսորդները, իհարկե, ես էլ նրանց հետ, նայում, ուսումնասիրում ենք արջի հետքերը:

Որսորդ Պաշան ասում է.

— Դրա՞ն մի տես, ի՞նչ որջ էր գտել իր համար, քեռի Ջույի դեզը:

Իսկ Պանտելեևնան սարսափած հարցրեց.

— Էդ ո՞նց է, որ քեզ վրա չի հարձակվել, ա՜յ Ջույ...

— Հիմա խոտից արջի հոտ կգա,— ասաց քեռի Ջույը, — կովն այդ խոտին էլ մոտիկ կգա՞, որ ուտի:

Թարգմ. ԱՆԱՀԻՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



# ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐՅԱՆ

Պատմում է Հայաստանի Պետական և Լենինյան կոմերիտմիության մրցանակների դափնեկիր, կոմպոզիտոր Տիգրան Մանսուրյանը:

— 1947 թվականի նոյեմբերին մեր ընտանիքը Բեյրութից հայրենիք վերադառնալով տեղավորվեց Արթիկի շրջանի Պեմզաշեն գյուղում: Այդ ժամանակ ես ութ տարեկան էի: Առաջին անգամ, երբ դպրոց մտա, միջանցքում տեսա մեր նշանավոր գրողների նկարները և որոշեցի գրող դառնալ: Այբբենարանը շատ սիրեցի: Ամեն անգամ երբ բացում էի, որ դաս սովորեմ, սկսում էի գրքի առաջին էջից կարդալ, մինչև հասնեի իմ օրվա դասին: Ընթերցանությամբ հրապուրվեցի և կարդում էի ինչ ձեռքս ընկներ, անգամ թերթի պատառոտված կտորտանքների վրա եղած կիսատ-պռատ բառերն ու նախադասությունները: 2-րդ, 3-րդ դասարանից սկսեցի բանստեղծություններ գրել: Բանաստեղծություններս լույս էին տեսնում դասարանական պատի թերթում:

Թե տանը, թե դպրոցում կարծում էին բանաստեղծ եմ դառնալու:

Մի անգամ գնացել էի ակումբ և տեսա հայրս դաշնամուրի մոտ նստել, նվագում էր: Երբ նա վեր կացավ, ես նստեցի տեղը և այդ օրվանից չբաժանվեցի դաշնամուրից: Սկսեցի ամեն օր ակումբ գնալ, բայց քանի որ երեկոներին արգելված էր ակումբում երևալ, ուր մնաց մոտիկ թողնեին դաշնամուրին, ստիպված սիրաշահում էի ակումբի աշխատողին: Նրա համար արևածաղիկ ու ծխախոտ էի առնում, կատարում բոլոր հանձնարարությունները: Այդ աշխատողը պետք է որ համբերատար մարդ լիներ, որովհետև իմ «նվագից» չեմ կարծում թե հաճույք էր ստանում: Ես իմ հորինած գործերն էի նվագում: Եթե նորն էի հորինում, հինը մոռանում էի, չէի կարող գրի առնել, որովհետև նոտաները չգիտեի: Նոտաները սովորեցի ավելի ուշ, ինքնուրույն: Մի անգամ հայրս հարցրեց.

— Հիմա ինչ ես դառնալու, բանաստե՞ղծ, թե կոմպոզիտոր:

— Կ ո մ պ ո զ ի տ ո ր , — համոզված ասացի ես:

Եվ երբ տարիներ անց ընդունվեցի Ռոմանոս Մելիքյանի անվան երաժշտական ուսումնարանը, հասկացա, որ երազանքս իրականացել է:

Թատրոնի և կինոյի համար առաջին անգամ երաժշտություն գրեցի, երբ կոնսերվատորիայի ուսանող էի: Ստեղծագործում եմ սիմֆոնիկ, կամերային և վոկալ ժանրերով: Գրել եմ «Նռան գույնը», «Մենք ենք, մեր սարերը», «Աշնան արևը», «Արևիկ», «Սգավոր ձյունը», «Կտոր մը երկինք», «Դիքոր», «Հին օրերի երգը» ֆիլմերի երաժշտությունները:

Մի անգամ, երբ գնում էի մանկապարտեզից աղջկաս՝ Նվարդիկին բերելու, ճանապարհին բանաստեղծ Յուրի Սահակյանը ինձ «Առաջին ձյուն» վերնագրով մի բանաստեղծություն տըվեց: Մանկապարտեզից վերադառնալիս Նվարդիկի հետ երգը հորինեցինք ու սկսեցինք երգել: Հետո ինքս խնդրեցի Յուրիից նոր տեքստեր:

Որոշել եմ գրել ստեղծագործություններ նաև փոքրահասակ դաշնակահարների ու ջութակահարների համար:

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

# Դելֆինները վերադարձան ծովախորշ

Այդ օրը երեկոյան ծովախորշի վրա կախվեցին կապարե ամպերի զանգվածները, շուտով պայթեց ուժգին ամպրոպը: Ծովը ափ էր շպրտում երկհարկանի տան բարձրության ալիքներ: Իսկ առավոտյան, ինչպես հաճախ է լինում Աբխազիայում, ամպրոպն անսպասելի դադարեց: Ամպերը քաշվեցին դեպի լեռները, ծովափին թողնելով տեղատարափից լվացված պուրակներն ու այգիները:

Ծովեզրով մի աղջիկ էր քայլում: Հանկարծ նա կանգ առավ. ինչ-որ տարօրինակ ձայն էր լսել: Նայեց շուրջը՝ ոչ ոք չկար: Բայց դարձյալ լսեց ձայնը, ասես գետնի տակից: Գուցե ինչ-որ մեկը մնացել է այն մեծ փոսի մեջ, որտեղ էքսկավատորները խիճ են հանում շինարարության համար: Առաջ վազեց և տեսավ, որ ջրի մեջ մի դելֆին է թպրտում: Գիշերվա փոթորիկը ափ էր նետել նրան, իսկ երբ ալիքը ետ էր քաշվել, կենդանին մնացել էր փոսի մեջ:

Աղջիկը զգուշորեն ձեռք տվեց դելֆինին: Նա ցնցեց գլուխը, մի շրջան կատարեց ջրի վրա և աղաճմլիկ ձայնով ծվաց:

Աղջիկն իջավ փոսը: Ուզում էր փոսից հանել դելֆինին, որպեսզի հետո օգնի ծովը հասնելու: Դելֆինը չէր դիմադրում, գալարվելով, պոչի և լողակների օգնությամբ հրվելով, նա սողում էր դեպի այն կողմը, որտեղից հասնում էր ծովի ալիքների աղմուկը: Աղջիկն ու կենդանին մի կերպ հաղթահարեցին վերջին մետրերը: Եվս մի համատեղ ճիգ, և դելֆինը հայտնվեց հարազատ տարերքի մեջ:

Այս պատմությունն անմիջապես տարածվեց ծովափնյա ավանի բնակիչների մեջ: Միայն թե տեղի ձկնորսները կասկածանքով ընդունեցին աղջնակի պատմածը:

— Մեր ծովախորշը ահա արդեն երեսուն տարի ոչ մի դելֆին չի գալիս,— ասացին նրանք:
— Գուցե դա դելֆին չի եղել, այլ կատրան՝ սևծովյան շնաձուկ:

— Դելֆին էր, «ճերմակակող» դելֆին,— առարկում էր աղջիկը:

Մինչդեռ ձկնորսներն այդպիսի կասկածանքի համար լուրջ հիմքեր ունեին. դելֆինները ծովախորշ չէին գալիս հետևյալ պատճառով: Ետպատերազմյան դժվարին տարիներին այստեղ կազմակերպվել է դելֆինների որս: Հենց տեղում, ծովափին մշակում էին մսեղիքը. ժամանակավոր մարագներում հալում էին ճարպը... Եվ դելֆինները հեռացան Սկուրչա ծովախորշից, թեև հարմար էր, ջուրը՝ տաք: Հեռացան, թվում էր, ընդմիշտ...

Այդ դեպքից անցավ մեկ-երկու շաբաթ, և ձկնորսները ուրախությամբ հայտնեցին աղջկան.

— Դու ճիշտ էիր... Այսօր ծովախորշի մոտերքում դելֆիններ տեսանք, մի ամբողջ երամ: Երևի, քո ծանոթն է բերել նրանց մեր ափերը...

Նույն օրվա մայրամուտին ծովախորշում երևացին «ճերմակակող» դելֆիններ: Նրանք երկար ժամանակ խաղում էին հեռվում, ապա անհետացան ուր որ: Նրանց անսպասելի հայտնվելը տոնական իրադարձություն դարձավ ավանի բնակիչների համար:

Աղջնակն ամեն երեկո կանգնում էր ծովափին, ճիշտ այն տեղում, որտեղ փորձանքից փրկեց դելֆինին: Աղջիկը հավատում էր, որ կհանդիպի իր բարեկամին: Նա փորձառու ձկնորսների պատմածներից գիտեր, որ նման բան լինում է: Բայց ահա մի օր աղջկան շատ մոտիկ ջրի միջից հայտնվեց մի դելֆին և սկսեց պտույտներ կատարել հենց ափի մոտ:

— Այդ նա՜ է,— ճչաց աղջիկը: — Եկել է ինձ մո՜տ...

Աղջիկը նետվեց ջրի մեջ, թափահարելով ձեռքերը, սկսեց կանչել նրան:

Շուտով ափի մոտ հայտնվեց և ամբողջ երամը: Կապտավուն, թափանցիկ ջրի միջով աղջիկը տեսնում էր, թե ինչպես նրանց գորշ, ճկուն մարմինները սրընթաց կտրում էին ջուրը ծովի հատակին մոտիկ՝ իրենց լողակներով փրփրացնելով ծովի հարթ մակերեսը:

Աղջիկը կանգնել էր շփոթված: Նա ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, թե ինչ են անում դելֆինները. ձկնե՞րի են հետապնդում, թե՞ իսկապես իր «ծանոթը» եկել է՝ բերելով իր ընկերներին նրա հետ հանդիպման: Պարզ էր մի բան. դելֆինները վերջնականապես վերադարձել էին իրենց սիրած վայրը:

Սկուրչա ծովախորշը այդուհետ դարձավ նրանց հարմար ու սիրելի հանգստավայրը: Եվ դրանում, հավանաբար, իր դերը խաղաց Անտիգա Ժվանիա անունով աղջիկը, որը մի անգամ օգնեց փորձանքի մեջ ընկած ծովային բարեկամին:

*Թարգմ. Ա. ԴՈՎԿԱՆՅԱՆ*



...Շախմատը անմոռանալի ճակատամարտերի մի աշխարհ է, որտեղ դեռևս ոչ ոքի չի հաջողվել հասնել լրիվ կատարելության, բայց անշեղորեն ձգտելով դրան, աճել են մեծ վարպետներ, նրանց հետ էլ՝ շախմատային արվեստը։

ԱՆԱՏՈԼԻ ԿԱՐՊՈՎ

«Պրավդա» թերթի թղթակցի հարցերին աշխարհի եռակի չեմպիոն Անատոլի Կարպովի տված պատասխաններից.

ՀԱՐՑ. — Շախմատը ամենից առաջ ի՞նչ հատկություններ է դաստիարակում մարդու մեջ։

ՊԱՏԱՍԽԱՆ. — Վստահություն իր ուժերի նկատմամբ։ Աշխատունակություն։

ՀԱՐՑ .— Բարձրագույն կարգի խաղացողն ինչո՞վ է աչքի ընկնում։

ՊԱՏԱՍԽԱՆ .— Վերը հիշածիս ավելացրած՝ նյարդային ամուր համակարգ։ Եվ տաղանդ։

ՀԱՐՑ.— Ձեր կարծիքով ի՞նչ է տաղանդը։

ՊԱՏԱՍԽԱՆ .— Տաղանդավոր պետք է ծնվել։ Բայց ապագա հաջողությունների երաշխիքը այդ չէ։ Հարկավոր է նաև աշխատանք, բնավորություն։ Կարող են ասել, թե այդ ինքնըստինքյան, և այնուհանդերձ... Ինչքա՞ն է պատահել, երբ նոր-նոր սկսել է մեկը հանդես գալ, ցուցաբերել փայլուն տաղանդ, բայց այդ սկզբնական աստիճանին էլ մնացել է։ Հետո ասել են, թե բնավորությունը խանգարեց, ա՞խ այդ բնավորությունը...

ՀԱՐՑ. — Բնավորության ինչպիսի՞ գծերն եք ամենից ավելի գնահատում։

ՊԱՏԱՍԽԱՆ. — Համարձակությունը, բայց ողջախոհ։

## ԿՈՎԵՐՆ ՈՒ ՀԱՂՈՐԴԱԼԱՐԵՐԸ

ԳՖՀ-ում մի այրի դատի տվեց էլեկտրակենտրոնի ղեկավարությանը՝ իրեն հասցված նյութական վնասների համար։ Այրին ապացուցեց, որ երբ իր տնտեսության մոտով անց կացվեց բարձր լարվածության էլեկտրահաղորդալարեր, իր կովերը սկսեցին ավելի քիչ կաթ տալ։ Փորձագետները եկան այն համոզման, որ, իրոք, էլեկտրական դաշտը կարող է առաջ բերել տնային կենդանիների կաթնագեղձերի նորմալ գործունեության որոշ փոփոխություններ։

## ԵՐԿՈՒ ՍՏԱՄՈՔՍՈՎ

Ամերիկյան ռադիոլոգիական քոլեջի բյուլետենում տպագրված հաղորդման համաձայն, Արևմտյան Վիրջինիա նահանգում ապրում է քսանհինգամյա մի տղամարդ, որը մեծ հետաքրքրություն է ներկայացնում բժիշկների համար։ Բժշկական քննություն անցկացնելիս պարզվեց, որ նա երկու ստամոքս ունի։ Սա առաջին դեպքն է, երբ մարդու որովայնային խոռոչում հայտնաբերվում են երկու նորմալ զարգացած ստամոքսներ։ Ընդ որում, կրկնակի ստամոքսները նրան ոչ մի անհանգստություն չեն պատճառում։





# ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ

Տասնամյակներ ի վեր «Պիոներ» ամսագրում տպագրված շատ բանաստեղծությունների, պատմվածքների ու հեքիաթների ձևավորումների տակ դուք կարդում եք նկարիչ Կարեն Սմբատյանի անունը: Նա ջերմ ու բարի ժպիտով շաղախված իր նկարազարդումներով հաճելի շատ պահեր է պարգևել «Պիոների» ընթերցողներին: Դրա հետ միասին Սմբատյանը մեկուկես տասնամյակ եղել է ամսագրի գեղարվեստական խմբագիրը, աշխատանք, որ մեծ նվիրումով է կատարել, և ամսագիրը ընթերցողներին է հասել ճաշակով ու հաճելիորեն ձևավորված:

Իր նկարների թեմաները Կարեն Սմբատյանը առնում է ոչ միայն առօրյա կյանքից, այլև փնտրում ու գտնում



«ԱՆԴՐԱՆԻԿԻ ԶԻՆՎՈՐԸ»

## Փղերը փոխարինում են շոգեքարշին

Հնդկական թերթերը գրում են, որ չնայած տրակտորների, բեռնատար ավտոմեքենաների ու վերամբարձ կռունկների ավելացմանը երկրում, վարժեցված փղերի կարիքը ոչ միայն չի պակասում, այլև ավելանում է տարեցտարի:

Նոր դպրոցներ են բացվում, որտեղ կենդանիներին աշխատել են սովորեցնում: Ավելանում է նաև տոնավաճառների թիվը, որտեղ նրանք վաճառահանվում են: Չէ՞ որ անտառահատման

է մեր պատմության էջերում, հոգևոր-մշակութային այն վիթխարի ժառանգության մեջ, որ դարերի ընթացքում կուտակել է ժողովուրդը: Նա նկարաշարքեր է ստեղծել հայ ժողովրդական հեքիաթների թեմաներով, հաճախ է անդրադառնում նաև մեր դիցաբանությանը: Մեր ոչ հեռավոր անցյալի, հետևաբար, այսօրվա և վաղվա մըտահոգությամբ են ստեղծված նրա «Ուրֆա», «Ով ենք մենք, որտեղից ենք գալիս, ուր ենք գնում», «Անդրանիկի զինվորը» և շատ ուրիշ կտավներ:

Լավատեսությունն ու կենսասիրությունն են բնորոշ Կարեն Սմբատյանի նկարչությանը: Առանձնահատուկ սեր է տածում նա դեպի մանուկների աշխարհը, որի վկայությունն են ինչպես նրա բազմամյա աշխատանքը «Պիոներում», այնպես էլ մանկական գրքերի բազմաթիվ հրաշալի ձևավորումները: Հովհաննես Թումանյանի «Քաջ Նազարը», «Անբախտ վաճառականները», «Չախչախ թագավորը», անգլիացի գրող Ա. Միլնի «Վինի Թուխը և բոլոր-բոլորը», դասական ու ժամանակակից այլ գրողների շատ ու շատ ըստեղծագործություններ Կարեն Սըմբատյանի վրձնի տակ ուրույն և ուշագրավ մեկնաբանություն են գտել:



«ՕՇԱԿԱՆՑԻ ՏՂԱՅԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ»

Լրացավ Կարեն Սմբատյանի ծննդյան հիսուն տարին: «Պիոներ» ամսագրի բազմահազար ընթերցողները, խմբագրության կոլեկտիվն ու խմբագրական կոլեգիան շնորհավորում են սիրելի նկարչին, ցանկանալով, որ նույնքան բեղմնավոր լինի նրա հետագա աշխատանքը մանուկների համար առհասարակ և մասնավորապես «Պիոներ» ամսագրում:

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ




**գործում, օրինակ, փղերը ունիվերսալ «մեխանիզմներ» են: Նրանք անցնում են այն տեղերով, որտեղով չեն կարող անցնել մեքենաները, մեծ արտադրողականություն ունեն և «վառելանյութի» հարցում քմահաճ չեն:**

**Վերջերս փղերը հաջողությամբ յուրացրել են նոր մի մասնագիտություն՝ երկաթուղային կայարաններում փոխադրում են մանրային շոգեքարշերին:**

# ԱԼՈ, ԱՍԱՑԵՔ, ԻՆՉՊԵ՞Ս Է ՍԻՐՏՍ

Երկրաբանների խումբը առաջ է շարժվում անապատի կիզիչ արևի տակ: Ճնշելու օդ՛ չկա, ավազն այրում է, մեջքներին՝ ծանր ուսապարկեր են... Ոչ բոլորը կըդիմանան նման լարվածությանը: Մեկնումեկի սիրտը կարող է և նվաղել: Սակայն մարդիկ վստահորեն առաջ են գնում: Նրանք գիտեն, որ հեռավոր քաղաքում, այս դժոխքից հարյուրավոր կիլոմետր հեռու, բըժիշկներն ուշադիր հետեվում են իրենց առողջական վիճակին: Դադարներին ռադիոտը կապվում է բժիշկների հետ, որոնք լսում են արշավախմբի յուրաքանչյուր անդամի սրտի զարկերը: Ռադիոընդունիչին միացված էլեկտրասրտագրիչի տվյալներն անմիջապես վերծանվում են հաշվիչ մեքենայով: ԷՀՄ-ն հիշում է յուրաքանչյուր երկրաբանի տվյալները՝ արշավի առաջին օրվանից սկսած, մշտապես դրանք համեմատում է և սրտի աշխատանքում նվազագույն փոփոխություն հայտնաբերելու դեպքում անմիջապես ազդանշան տալիս: Այդ պատճառով էլ արշավախմբում չնայած բժիշկ չկա, մասնակիցները շատ հանգիստ են զգում իրենց:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Մեկ այլ օրինակ: Ծընողներն աշխատանքի են գնացել, երեխաները՝ դպրոց, տանը միայն տատիկն է: Հանկարծ նա իրեն վատ է զգում: Ճիշտ է, ոչ այնքան, որ «Շտապ օգնություն» կանչի, բայց դե սիրտն այնքան էլ լավ չէ: Պետք է ստուգել: Տատիկը հավաքում է անհրաժեշտ համարը և ընկալուչը դընում կրծքի ձախ կողմում: Մեկ-երկու րոպեից բժիշկը մանրամասն պատասխանում է: Իրականում դա բժիշկը չէ, այլ ԷՀՄ-ն...

Այսօր այս ամենը ֆանտաստիկ է թվում: Սակայն վաղը նման հեռակա բուժքննությունները շատ սովորական կդառնան: Այդպիսի սարքավորման ստեղծման վրա այժմ հաջողությամբ աշխատում են սովետական և հունգար գիտնականները: Մերոնք զբաղվում են տեսականորեն մշակումներով ու մաթեմատիկական հաշվարկներով, իսկ հունգարացիները սարքերն են ըստեղծում: «Վիդեոտոն» գործարանում նրանք պատրաստել են փորձնական հաշվիչ մեքենա, որին սովետական և հունգար մասնագետները «սովորեցրել են» էլեկտրասրտագրիչի ժապավենը կարդալ հմուտ բըժըշկի պես:

Շուտով ամենքս էլ կկարողանանք վերցնել ընկալուչը և ասել. «Ալո, ասացեք խնդրեմ, ինչպե՞ս է սիրտս»: Ասենք, թող դա մեզ երբեք պ...ոք չգա:

# ՎԻԿՏՈՐԻԱ



Աշխարհի ամենաջրառատ գետի՝ Ամազոնի ծանծաղուտներում աճում է մի տարօրինակ ու զարմանահրաշ բույս, որը բաղկացած է ջրի մակերեսին լողացող 1.5-ից մինչև 2.0 մետր տրամագիծ ունեցող 1—2 հսկայական տերևներից, մինչև 2.0 մետր երկարությամբ տերևակոթունից և հսկայական ծաղիկներից:

Այս բույսը 1837 թվականին հայտնաբերել է անգլիացի ճանապարհորդ-բուսաբան Ռիչարդ Շոմբբուրգը և ի պատիվ Անգլիայի թագուհու, անվանել «Վիկտորիա»: Հետագայում այն անվանվեց «արքայական» կամ «ամազոնյան վիկտորիա»:

Վիկտորիայի կլոր, տաշտականման տերևները ներքևից ծածկված են ուժեղ զարգացած ջլերի ցանցով, որը տերևին մեծ ամրություն է տալիս և ունի օդ պարունակող հատուկ հյուսվածքներ, որոնց շնորհիվ ոչ միայն տերևը մնում է ջրի մակերեսին, այլև հեշտությամբ կարող է պահել մինչև 50 կգ ծանրությունը: Նշանակում է, նրա վրա առանց դժվարության կարող է տեղավորվել 14—15 տարեկան պատանին: Ճանապարհորդները պատմում են, որ վիկտորիայի տերևների վրա հավաքված ջրում, ինչպես տաշտում, զանազան թռչուններ են լողանում:

Զարմանահրաշ են նաև վիկտորիայի հսկայական ծաղիկները: Դրանց տրամագիծը անցնում է 25—40 սանտիմետրից: Ծաղկումը տևում է ուղիղ 2 ցերեկ և 2 գիշեր: Խիստ բուրումնավետ են, երեկոյան փակվում և առավոտյան բացվում են: Սպիտակ են, կարմրավարդագույն միջնամասով, սակայն ծաղկման երկրորդ օրը բազմազան գունավորում են ստանում՝ մոռագույն կարմրից մինչև մուգ բոսորագույն: Երբ միջատների միջոցով տեղի է ունենում ծաղիկների փոշոտումը, դրանք անմիջապես խոնարհվում են դեպի ցած, սուզվում ջրի մեջ և այնտեղ կազմավորում պտուղը՝ ոլոռի մեծությամբ սև, չափազանց համեղ սերմերով:

Այս հրաշալի բույսի տերևակոթունները, տերևների ներքին մակերեսը, ծաղկակիր ցողունները և ծաղկի բաժակաթերթիկները ծածկված են սուր, խիտ փշերով, որպեսզի գետում վխտացող ագահ, բուսակեր ձկները չհոշոտեն դրանք:

Արքայական վիկտորիան խիստ քըմահաճ բույս է: Նա աճում է միայն այնպիսի ջրերում, որոնց ջերմաստիճանը 25-ից չի իջնում և 30-ից չի բարձրանում: Ահա թե ինչու, մեր պայմաններում հնարավոր է այս հրաշալի բույսը աճեցնել միայն ջերմատնային հատուկ պայմաններում, որտեղ ջրի ջերմաստիճանը մշտապես պահպանվում է այդ սահմաններում:

Հայտնի է վիկտորիայի մի ուրիշ տեսակ ևս՝ խաչանման վիկտորիան, որը տարածված է նույնպես Հարավային Ամերիկայում՝ Պարանա գետի ծանծաղուտներում: Վիկտորիայի այս տեսակը, իհարկե, իր չափով և շքեղությամբ զիջում է արքայական վիկտորիային, այնուամենայնիվ, սա ևս համարվում է բուսական աշխարհի հրաշալիքներից:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 8 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրությանը 10.6.1982թ.: Ստորագրված է տպագրության 3.08.82 թ.: ՎՖ 05360 Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 56062: Պատ. 1504: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




## ՓԱՅՏԱՀԱՏ



## ԺՈԺՎՈՂ ԲԱԶԿԱԹՈՌ








ԱՆՀՐԱԺԵՇՏ ՆՅՈՒԹԵՐ. լուցկու տուփ, խցան, ստվարաթուղթ:

ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԵՂԱՆԱԿԸ. փայտահատին ու կանաչ մակերեսը նկարել ստվարաթղթի վրա, ապա կտրել և կետագծերով ծալել: A կետը սոսնձել տուփին: Կանաչ մակերեսը տուփի երեսին սոսնձելուց հետո խցանի կեսը որպես քոթուկ ամրացնել այնպես, որ կացինը ճիշտ նրա վրա իջնի: Տուփի մակերեսին խցանի մի քանի կտոր սոսնձել:

Լուցկու տուփը բացել-փակելիս փայտահատը աշխատանքային շարժումներ կանի:

ԱՆՀՐԱԺԵՇՏ ՆՅՈՒԹԵՐ. կիսած կոճ և ստվարաթուղթ:

ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԵՂԱՆԱԿԸ. բազկաթոռն ու մարդուկին նկարել ստվարաթղթի վրա և կտրել: Ապա այն ամրացնել կոճին:

Մարդուկի քթից դեպի առաջ ձգելով ու բաց թողնելով ճոճում ենք բազկաթոռը:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.
ԻՆԴԵՔՍ՝ 77888

# Պապ ու թոռ

*ՎԱՉԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Հեռուներում դեզեր կան,
Թաղված արծաթ մշուշում,
Իմ ու պապիս զորքերն են
Վրան զարկել այս դաշտում:

Հովվի սրինգն ինչ-որ տեղ
Իր հոտին է համոզում,
Ջրի կարկաչն է թոթով
Հետզհետե նվազում:

Հոգնությունն ինձ ու պապիս
Փլցնում է կողք-կողքի,
Ու փռվում է մեզ վրա
Կապույտ քողը երկնքի:

Ու հանց ծաղկած մասրենի
Կամ բուրավետ անմոռուկ,
Իմ անուշ քունն է հսկում
Ճերմակաշուք մի մորուք: